

# Մերկություն



**Մերկությունը** մարդու մարմնի վիճակն է՝ առանց հագուստի կամ ծածկոցի[1]։ Որոշ իրավիճակներում նվազագույն հագուստը կամ մերկությունը կարող է համարվել սոցիալապես ընդունելի, սակայն հիմնականում ավելի շատ պահանջվում է հագուստ կամ հագոստի որոշ տարրեր կրելը։ Հիմնականում հագուստի տարրերը կրում են ֆունկցիոնալ նպատակներով, օրինակ, ցրտից պաշտպանվելու,անձրևից պաշտպանվելու համար։ Կան նաև ազգային տարազներ կամ հագուստի տարրեր, որոնք խիստ պարտադիր են որոշ ազգերի համար։

## Մերկություն հասարակական վայրերում



Պատահական մի կին Ֆիջի կղզում, 1908

Մեր օրերում (21-րդ դարում) որոշ եվրոպական երկրներ, օրինակ՝ Գերմանիան, կարող է հանդուրժել մերկությունը հանրային վայրերում[2], սակայն շատ երկրներում դա խիստ անընդունելի է, նույնիսկ տվյալ երկրի ազգաբնակչության համար կարող է համարվել խիստ վիրավորական (անգլ.՝ indecent exposure)։

2012 թվականին Սան Ֆրանցիսկո քաղաքի հայտնի ազատական քաղաքային խորհուրդն առաջարկեց արգելել մերկությունը քաղաքի ներսում, հանրային վայրերում։ Սակայն նախաձեռնությունը ընդիմադիրների կողմից արժանացավ խիստ քննադատության[3][4]։ Նմանատիպ իրավիճակ ստեղծվեց Սան Օնոֆրե նահանգի լողափներից մեկում՝ հանրային մերկության երկարամյա ավանդույթ ունեցող լողափում, որին կից զբոսայգիներում 2010 թվականից սկսեցին տուգանքներ նշանակել նուդիստներին[5]։

Որոշ մշակույթներում կիսամերկ լինելը համարվում է մասնակի մերկություն, սակայն կրծքերի ի մերկացումը կարող է համարվել «անպարկեշտ մերկություն»։ Այնուամենայնիվ, շատ արևմտյան երկրների համապատասխան միջավայրերում, ինչպիսիք են լողափները, կիսամերկ լինելը սոցիալապես ընդունելի է։

Մերկությունը երբեմն օգտագործվում է որպես մարտավարություն հանրային բողոքի ակցիաների ժամանակ՝ հանրության ուշադրությունը նրանց պահանջների վրա գրավելու համար։ Երբեմն նման միջոցառումներ են իրականացվում՝ նպատակ ունենալով նպաստել հանրային մերկության տարածմանը[6]։

### Հանրային շփման վայրերում

Միացյալ Նահանգներում և Կանադայի հիմնականում անգլիախոս որոշ շրջաններում հանրակրթական դպրոցների աշակերտները ավանդաբար ստիպված են եղել մարզասրահում մարզվելուց հետո լոգանք ընդունել նույն սեռի դասընկերների հետ։ Սակայն վերջին տարիներին ԱՄՆ-ում հասարակական բողոքի ակցիաները և դատական հայցերի



Հենրի Սկոտ Տուկ — *Լողացողը* (1890)

սպառնալիքները հանգեցրել են նրան, որ դպրոցականների համար ցնցուղ ընդունելը լինի ցանկությամբ։ 1987 թվականին տված հարցազրույցում ամերիկյան կրտսեր դպրոցներից մեկի տնօրենը փաստել է, դպրոցում պարտադիր ցնցուղ ընդունելու մասին բողոքների մեծ մասը, որ նա լսել է, գալիս է ոչ թե հենց երեխաներից, այլ նրանց ծնողներից[7]։ Ամերիկյան մասնավոր գիշերօթիկ դպրոցների և ռազմական ակադեմիաների սաները ևս օգտվում են ընդհանուր ցնցուղներից[8], քանի որ ուսանողները այնտեղ են 24 ժամ, և նրանք պետք է պահպանեն հիգիենան և լողանան ամեն օր[9]։ Այսպիսին են նաև պայմանները Եվրոպայի սկանդինավյան և գերմանալեզու երկրների մեծ մասում, նույնիսկ եթե սաունան համալիրի մի մասն է, որտեղ լողազգեստ կրելը պարտադիր է լողավազանի տարածքում[9]։ Սաունաները շատ տարածված են ժամանակակից Ֆինլանդիայում, որտեղ յուրաքանչյուր երեք մարդուն բաժին է ընկնում մեկը[10]։




«Bare breasts are our weapons» («Մերկ կուրծքը մեր զենքն է։»)

Գերմանիայում սաունաները չեն լինում առանձին տղամարդկանց և առանձին կանանց համար նախատեսված, այլ ընդհանուր է նույնիսկ ամբողջ ընտանիքների համար։ Որոշ սաունաներում ամիսը մեկ անգամ հայտարարվում է «կանանց օր», երբ տղամարդկանց մուտքն արգելված է[11]։

## Մերկություն տանը

Մեծ Բրիտանիայում տղամարդկանց 47%-ը և կանանց 17%-ը նախընտրում են ամբողջովին մերկ քնել (ըստ 1996թ. BBC-ի հարցման)[12]։

Կանադացիների 39%-ը տանը կարող է որոշակի ժամանակ անցկացնել ամբողջովին մերկ։ Այս ավանդույթը եկել է շատ վաղ ժամանակներից[13]։

ԱՄՆ-ում տղամարդկանց 31%-ը և կանանց 14%-ը քնում են ամբողջովին մերկ (ըստ 2004թ. հարցումների)[14]։



ԱՄՆ-ի կանանց միայն 14%-ն է տանը մերկ քնում (իսկ Բրիտանիայում՝ 17 %)

## Իրավական ասպեկտներ

Մեծ Բրիտանիայում 1986 թվականից գործում է «Հասարակական կարգի մասին» օրենքը, որն արգելում է «սպառնալից կամ վիրավորական» վարքագիծ դրսևորել այլ անձանց նկատմամբ (անգլ.՝ … *«threatening, abusive or insulting within the hearing or sight of a person likely to be caused harassment, alarm or distress»*)։ Գործնականում դա նշանակում է, որ լողափում, որտեղ ընդունված է քայլել մերկ, ցանկացած մարդ կարող է ամբողջովին մերկ լինել, բայց եթե ինչ-որ մեկը, և ոչ միայն ոստիկանը, այլ թեկուզ կողքով անցնող ցանկացած մարդ պահանջում է ծածկել նրա մերկությունը, նա պարտավոր է դա անել, հակառակ դեպքում կարող է ձերբակալվել։ Այս

օրենքն ունի նաև այլ ենթակետ. ամենայն հավանականությամբ անձին պաշտոնական մեղադրանք չի առաջադրվի, եթե նա կարողանա ապացուցել, որ ինքը իր վարքով դիտավորյալ ցանկացել է ինչ-որ մեկին վիրավորել:



Մերկ աղջիկները Սիեթլի արվարձաններում փառատոնի ժամանակ, ԱՄՆ

Միացյալ Նահանգներում հանրային վայրում մերկ լինելը հիմնականում արգելված է օրենքով: Արգելվում է նաև մերկ լինել սեփականության տարածքում, եթե մերկ անձը տեսանելի է դրսից[15]:



Արգելված է մերկ պատկերների հրապարակային ցուցադրումը 1900 թվական

2015 թվականի դրությամբ ԱՄՆ հինգ նահանգներ (Նյու Յորք, Մեյն, Հավայան կղզիներ, Օհայո և Տեխաս) ընդունել են օրենքներ, որոնք բացահայտորեն թույլ են տալիս կանանց կիսամերկ լինել հասարակական վայրերում, որտեղ տղամարդկանց օրինականորեն թույլատրվում է դա անել:Երկրի մնացած մասում կնոջ կուրծքը մերկացնելը մինչ օրս համարվում է «անպարկեշտ մերկացում» և, հետևաբար, համարվում է քրեական հանցագործություն: Երեք նահանգներ նույնիսկ ունեն օրենքներ, որոնք բացահայտորեն նշում են, որ հասարակական վայրում (Արիզոնայում, ցանկացած վայրում այլ անձի ներկայությամբ) կնոջ մերկացումը քրեական հանցագործություն է[15][16][17][18][19].:

## Հոգեբանական ասպեկտներ

Հետազոտություններից մեկում մասնակիցները դիտարկել են երկու տիպի մարդկանց՝ ամբողջովին մերկ և հագուստով ամբողջովին ծածկված: Մերկները նրանց դիտարկմամբ գնահատվել են որպես պակաս խելացի, հավակնոտ, անգրագետ, բայց համարձակ: Իսկ մյուս խումբը գնահատվեց ավելի խելացի, գրագետ, բայց սահմանափակ: Այս ուսումնասիրությունը հուշում է, որ մարդու մերկ մարմնի ընկալումը մի կողմ է մղում նրա անձի ընկալումը[20][21]:

Մեկ այլ հետազոտության մեջ, տեսնելով նույն մարդկանց հագած և մերկ, դիտորդները զգացել են նրանց հանդեպ կարեկցանքի տարբեր աստիճաններ. երբ տեսնում էին թեթև հագուստով մարդուն, կարեկցանքի մակարդակը միջանկյալ էր, իսկ մերկ մարդուն՝ կարեկցանքի ամենաբարձր մակարդակը: Սա նշանակում է, որ կարեկցանքի մակարդակը կախված է մարդու մերկության աստիճանից[20][21]:

Ամեն դեպքում, մարդկանց մտքերի և գործողությունների վրա այլ մարդկանց նկատմամբ, հաճախ անգիտակցաբար, ազդում է մարմնի որ մասերը և որքանով[21].

## Ծանոթագրություններ


1. մերկություն - բառարան.ամ (https://bararan.am/մերկություն) «nudity – Definitions from Dictionary.com» (https://www.dictionary.com/browse/nudity). dictionary.com.
2. DER SPIEGEL. «Baring It All: Get Naked with the Germans - DER SPIEGEL - International» (https://www.spiegel.de/international/baring-it-all-get-naked-with-the-germans-a-415516.html) (անգլերեն). www.spiegel.de. Արխիվացված (https://web.archive.org/web/20201025120339/https://www.spiegel.de/international/baring-it-all-get-naked-with-the-germans-a-415516.html) օրիգինալից 2020 թ. հոկտեմբերի 25-ին. Վերցված է 2020 թ. մարտի 7-ին.

3. Taub, Gypsy (2012 թ. նոյեմբերի 23). «The naked truth about San Francisco's nudity ban | Gypsy Taub» (https://web.archive.org/web/20160604131357/http://www.theguardian.com/commentisfree/2012/nov/23/naked-truth-san-francisco-nudity-ban). *The Guardian*. Արխիվացված է օրիգինալից (https://www.theguardian.com/commentisfree/2012/nov/23/naked-truth-san-francisco-nudity-ban) 2016 թ. հունիսի 4-ին. Վերցված է 2020 թ. մարտի 7-ին.
4. Reynolds, Eoin (2012 թ. նոյեմբերի 20). «San Francisco nudists warn of backlash if anti-naked law passes» (https://web.archive.org/web/20160426050852/http://www.theguardian.com/world/2012/nov/20/san-francisco-nudists-backlash-ban). *The Guardian*. Արխիվացված է օրիգինալից (https://www.theguardian.com/world/2012/nov/20/san-francisco-nudists-backlash-ban) 2016 թ. ապրիլի 26-ին. Վերցված է 2020 թ. մարտի 7-ին.
5. «SAN ONOFRE: State begins citing nudists at beach» (https://web.archive.org/web/20110906123239/http://www.nctimes.com/news/local/sdcounty/article_a042f0f4-f792-5b5e-bc16-8f3a820dec51.html). *North County Times*. 2010 թ. մարտի 23. Արխիվացված է օրիգինալից (http://www.nctimes.com/news/local/sdcounty/article_a042f0f4-f792-5b5e-bc16-8f3a820dec51.html) 2011 թ. սեպտեմբերի 6-ին. Վերցված է 2015 թ. դեկտեմբերի 18-ին.
6. *Alaimo, Stacy* The naked word: The trans-corporeal ethics of the protesting body (https://www.tandfonline.com/doi/abs/10.1080/07407701003589253?journalCode=rwap20) (անգլ.) // *Women & Performance: a journal of feminist theory* : journal. — 2010. — Т. 20. — № 1. — С. 15—36. — ISSN 0740-770X (http://www.worldcat.org/issn/0740-770X). —
7. «Interview with John Pleacher 2/16/87» (https://web.archive.org/web/20050317001427/http://www.unlv.edu/projects/ohpsp/p/133pleacher.html). Արխիվացված է օրիգինալից (http://www.unlv.edu/projects/ohpsp/p/133pleacher.html) 2005 թ. մարտի 17-ին. Վերցված է 2007 թ. ապրիլի 28-ին.
8. ACLU of Washington. «ACLU-WA's Work for Student Rights» (https://web.archive.org/web/20070403203030/http://www.aclu-wa.org/detail.cfm?id=180). Արխիվացված է օրիգինալից (http://www.aclu-wa.org/detail.cfm?id=180) 2007 թ. ապրիլի 3-ին. Վերցված է 2007 թ. ապրիլի 28-ին.
9. «text view of nakedness and the finnish sauna.txt» (http://corz.org/public/docs/naturism/nakedness%20and%20the%20finnish%20sauna%20.txt). corz.org. Արխիվացված (https://web.archive.org/web/20081006060645/http://corz.org/public/docs/naturism/nakedness%20and%20the%20finnish%20sauna%20.txt) օրիգինալից 2008 թ. հոկտեմբերի 6-ին. Վերցված է 2020 թ. մարտի 7-ին.
10. «Seeking the real Finnish sauna» (https://finland.fi/life-society/seeking-the-real-finnish-sauna/) (անգլերեն). thisisFINLAND. 2013 թ. հունիսի 7. Արխիվացված (https://web.archive.org/web/20200608165940/https://finland.fi/life-society/seeking-the-real-finnish-sauna/) օրիգինալից 2020 թ. հունիսի 8-ին. Վերցված է 2020 թ. մարտի 7-ին.
11. Илья Бруштейн (2014 թ. փետրվարի 11). «Парилка по-немецки: особенности бань в Германии» (https://aif.ru/health/life/parilka_po-nemecki_osobennosti_ban_v_germanii). aif.ru. Արխիվացված (https://web.archive.org/web/20190731131942/http://www.aif.ru/health/life/parilka_po-nemecki_osobennosti_ban_v_germanii) օրիգինալից 2019 թ. հուլիսի 31-ին. Վերցված է 2020 թ. մարտի 7-ին.
12. *The Clothes Show Magazine*, May 1996, BBC Magazines
13. «1999 National Survey on Canadian Attitudes Towards Nudity - Survey Conclusions» (https://web.archive.org/web/20131205145214/http://www.fcn.ca/about-naturism/information-and-references/survey-on-naturism-in-canada?start=1). *Federation of Canadian Naturists*. Ontario, Canada: Federation of Canadian Naturists. Արխիվացված է օրիգինալից (http://www.fcn.ca/about-naturism/information-and-references/survey-on-naturism-in-canada?start=1) 2013 թ. դեկտեմբերի 5-ին. Վերցված է 2011 թ. սեպտեմբերի 20-ին.
14. «American Sex Survey» (http://abcnews.go.com/images/Politics/959a1AmericanSexSurvey.pdf) (PDF). abcnews. 2004. էջ 26. Արխիվացված (https://web.archive.org/web/20110911012206/http://abcnews.go.com/images/Politics/959a1AmericanSexSurvey.pdf) (PDF) օրիգինալից 2011 թ. սեպտեմբերի 11-ին. Վերցված է 2009 թ. սեպտեմբերի 4-ին. Short Analysis here (http://abcnews.go.com/Primetime/News/story?id=156921&page=1) Արխիվացված (https://web.archive.org/web/20160303183159/http://abcnews.go.com/Primetime/News/story?id=156921&page=1) 2016-03-03 Wayback Machine
15. «Nudity and Public Decency Laws in America» (http://www.hg.org/article.asp?id=31193). HF.com. Արխիվացված (https://web.archive.org/web/20210116042536/http://www.hg.org/article.asp?id=31193) օրիգինալից 2021 թ. հունվարի 16-ին. Վերցված է 2015 թ. դեկտեմբերի 20-ին.
16. «The Weird, Wild Legal History of Breasts and Nipples» (https://www.yahoo.com/health/the-weird-wild-legal-history-of-breasts-and-104942336487.html) (անգլերեն). Yahoo! Health. 2014 թ. դեկտեմբերի 12. Արխիվացված (https://web.archive.org/web/20160124041815/https://www.yahoo.com/health/the-weird-wild-legal-history-of-breasts-and-104942336487.html) օրիգինալից 2016 թ. հունվարի 24-ին. Վերցված է 2015 թ. դեկտեմբերի 20-ին.

17. «Here's Where It's Legal for Women to Go Topless in the U.S.» (http://time.com/3834365/map-topless-laws/). TIME. 2014 թ. ապրիլի 24. Արխիվացված (https://web.archive.org/web/20151217125748/http://time.com/3834365/map-topless-laws/) օրիգինալից 2015 թ. դեկտեմբերի 17-ին. Վերցված է 2015 թ. դեկտեմբերի 20-ին.
18. «Why Are Women's Nipples Banned in Public and on Instagram, but Men's Nipples Aren't?» (http://www.menshealth.com/sex-women/nipple-double-standard) (անգլերեն). Men's Health. Արխիվացված (https://web.archive.org/web/20151223125030/http://www.menshealth.com/sex-women/nipple-double-standard) օրիգինալից 2015 թ. դեկտեմբերի 23-ին. Վերցված է 2015 թ. դեկտեմբերի 20-ին.
19. «Did You Know It Was Illegal For Men To Show A Nipple In Public In The 1930's» (http://www.thegailygrind.com/2015/05/14/did-you-know-it-was-illegal-for-men-to-show-a-nipple-in-public-in-the-1930s/) (անգլերեն). The Gaily Grind. Արխիվացված (https://web.archive.org/web/20151222080518/http://www.thegailygrind.com/2015/05/14/did-you-know-it-was-illegal-for-men-to-show-a-nipple-in-public-in-the-1930s/) օրիգինալից 2015 թ. դեկտեմբերի 22-ին. Վերցված է 2015 թ. դեկտեմբերի 20-ին.
20. *Pavperov, Alexey.* Как нагота влияет на наше восприятие человека (https://theoryandpractice.ru/posts/8194-the-ways-of-lust) // Theory & Practice. — 2016. — 18 января.
21. *Bloom, Paul.* The Ways of Lust (https://www.nytimes.com/2013/12/01/opinion/sunday/the-ways-of-lust.html) : [անգլ.] : [арх. (https://web.archive.org/web/20190807211432/https://www.nytimes.com/2013/12/01/opinion/sunday/the-ways-of-lust.html) 7 օգոստոսի 2019] // The New Yourk times. — 2013. — 1 December. — [Publ. online Nov. 29, 2013].

Վիքիպահեստն ունի նյութեր, որոնք վերաբերում են «Մերկություն» հոդվածին։

| | |
|---|---|
| Թեմատիկ կայքեր | Giant Bomb (https://www.giantbomb.com/wd/3015-1058/) |
| Բառարաններ և հանրագիտարաններ | Բրիտանիկա (https://www.britannica.com/topic/nudity) · Մեծ կատալոնական (https://www.enciclopedia.cat/ec-gec-0196891.xml) |
| Չափորոշչային վերահսկողություն | BNF: 11976658q (https://catalogue.bnf.fr/ark:/12148/cb11976658q) · GND: 4171077-0 (https://d-nb.info/gnd/4171077-0) · LCCN: sh85093175 (https://id.loc.gov/authorities/sh85093175) · NKC: ph478606 (http://aut.nkp.cz/ph478606) |